ՎԱՀԱԳ՛Ն ԴԱՎԹՅԱ՛Ն

# ՀԱՅԱՍՏԱՆ

ԼԵՌԱՆ ԼԱՆՋԻՑ ՆԱՅՈՒՄ ԵՄ ՔԵԶ,
ԵՂ, ՀԱՅԱՍՏԱ՛Ն, ԿԱՊՈՒ՛ՅՏ ՀԱԳԻՐ,
ԴՈՒ՝ ՉԲԱՑՎԱԾ ԻՄ ԳԱՂՏՆԱՐԱՆ,
ԴՈՒ՝ ԻՄ ՔԱՐԵ ՃԱԿԱՏԱԳԻՐ:

ԲԱՆ ՉԵՄ ՈՒԶՈՒՄ, ՄԻԱՅՆ ԱՅՍՊԵՍ՝
ՀՈԳՈՒՍ ԽՈՐՔՈՒՄ ԼՈՒՅՍՆ ԱՐՑՈՒՆՔԻ,
ԱՄԵՆ ԵԼՆՈՂ ԱՐԵՎԻ ՀԵՏ
ՔՈ ԴԵՄ ԽՈՆԱՐՀ ԻՋՆԵՄ ԾՈՒՆԿԻ:

ՆԱՅԵՄ ԱՆՎԵՐՋ ՀԵՌՎԻՑ ՓԱՅԼՈՂ
ՔՈ ԱՐԱՔՍԻ ԱՐԾԱԹ ԹԵԼԻՆ,
ԿԱՊՈՒՅՏԻ ՄԵՋ ՀԱՎԵՐԺԱՑԱԾ
ՄԱՍԻՍՆԵՐԻԴ ԱՌԱՍՊԵԼԻՆ:

ՓԱՌՔ ՏԱՄ ՀՈՂԻՆ, ՓԱՌՔ ՏԱՄ ՋՐԻՆ,
ՓԱՌՔ ՏԱՄ ԱՆԳԱՄ ՓՈՒՇ ՈՒ ՔԱՐԻՆ,
ԻՄ ՇՈՒՐԹԵՐԻՆ ՀԱԶԻՎ ՀԱՍԱԾ
ՔՈ ՊՂՆՁԵ ԱՅՍ ԲԱՐԲԱՌԻՆ:

ԱՅՍ ՄՇՈՒՇԻՆ, ՇՈՂԻՆ, ՑՈՂԻՆ,
ԱՅՍ ՍՈՒՐԲ ԾԽԻՆ ՈՒ ԿԱՊՈՒՅՏԻՆ,
ՑՈՐԵՆ ԱՐՏԻԴ ՎՐԱ ԹԵՎՈՂ
ՈՍԿԵՎՈՐԻԿ ՔՈ ԱՐՏՈՒՅՏԻՆ...

**ՅԻՐԺԻ ՆՈՍԵԿ**

# Եթե աշխարհի երեխաները միավորվեն



Ինչպես առաջին անգամ եկա Հայաստա՞ն: Հին պատմություն է: Մի անգամ Պրագայում չեխոսլովակա-սովետական բարեկամության ընկերությունը որոշեց մանկական նկարների ցուցահանդես-մրցույթ կազմակերպել, մրցույթն ամեն տարի նվիրված պիտի լիներ ՍՍՀՄ որևէ հանրապետությանը: Այն կոչվեց «ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ»: Ես այն ժամանակ համեմատաբար քիչ բան գիտեի Հայաստանի մասին: Մեր երեխաներին առաջարկեցինք նկարել Հայաստանը այնպես, ինչպես իրենք պատկերացնում են: Հազարավոր ըն-

կարներ եկան: Լավ հիշում եմ. մրցույթի եզրափակիչ փուլն էր, երեք փոքրիկ սենյակում նստած էին երեք փոքրիկ տղա ու նկարում էին: Երկու ժամ հետո, մենք՝ հանձնաժողովի անդամներս, պիտի երեք նկարներից մեկը հաղթող ճանաչեինք: Հաղթող ճանաչվեց այն տղան, որի նկարը կոչվում էր «Երևանում անձրև է»: Դա անսպասելի նկար էր, մեր պատկերացմամբ Երևանում անձրև շատ սակավ էր գալիս:

Մենք որոշեցինք ցուցահանդեսը բերել Հայաստան, որպեսզի հայ երեխաներն էլ այն տեսնեն: Քանի որ ես մրցանակաբաշխման հանձնաժողովի նախագահն էի, այդ գործն ինձ հանձնարարվեց: Հավաքեցի նկարները (լավ հիշում եմ, բոլորը միասին կշռում էին 148 կգ), կնոջս հետ եկանք Երևան: Երբ ոտք դրեցի հայկական հողին, տեսա, որ ինքնաթիռի շուրջը մեծ բազմություն է հավաքվել: Հոգսերս շատ էին: Նկարների կապոցները պիտի քաղաք հասցնեի, բայց ինչպե՞ս, չգիտեի: Մտքովս անցավ՝ տեսնես ո՞ւմ են դիմավորում այս մարդիկ: Եվ հանկարծ լսեցի «Նազդար»՝ «Բարև»: Ֆաշիստներից չեխ ժողովրդին ազատագրող գեներալ Մարտիրոսյանն էր: Մեզ այնքան ծաղիկ տվեցին հենց այդտեղ, օդանավակայանում, որ մեր տեսադաշտը փակվել էր ծաղիկներով, ու միայն Արարատի ճերմակ գագաթն էինք տեսնում: «Ես դեռ պիտի նկարները վերցնեմ», հիշեցրի ես, բայց գեներալ Մարտիրոսյանն ասաց. «Մի՛ անհանգստացիր, Յիրժի՛ ջան»: Այդպես ես առաջին անգամ լսեցի «ջան» բառը: Մեզ տարան հյուրանոց, հետո՝ զբոսայգի, հետո՝ թանգարանները: Ես երբեմն հիշում էի ու ասում. «Ես պիտի ցուցահանդես եմ բերել»: «Մի՛ անհան-



գրատացիր, Ցիրժի՛ ջան, ամեն ինչ կարգին է, ցուցահանդեսը շուտով կբացվի», պատասխանում էին իմ հայ բարեկամները:

Ցուցահանդեսն անցավ մեծ հաջողությամբ:

Այդ օրվանից անցել է 15 տարի: Արդեն չորս անգամ այցելել եմ Հայաստան: Այդ ընթացքում Չեխոսլովակիայի տարբեր քաղաքներում կազմակերպել եմ Հայաստանին նվիրված նկարներիս և կնոջս՝ Ինգե Նոսկովայի արած լուսանկարների 50 ցուցահանդես: Ծանոթացել եմ հայ ժողովրդի պատմությանը, հայ կերպարվեստին ու ճարտարապետությանը, եղել եմ Հայաստանի տարբեր ծայրերում, ամենակարևորը՝ ճանաչել եմ հայ մարդկանց: Ուզում եմ, որ մեր երկրում բոլորը հայերին ճանաչեն ու սիրեն այնպես, ինչպես ես:

Երբ վերջին անգամ Երևանում էի, այցելեցի գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոն: Ես ամբողջ սրտով ուրախ եմ, որ ձեր երկրում այդքան մեծ նշանակություն են տալիս երեխաների գեղագիտական դաստիարակությանը: Մեզ մոտ՝ Չեխոսլովակիայում կան ժողովրդական գեղարվեստական դպրոցներ, որոնց նպատակն է արվեստի հետ շփումը բնակչության համար կենսապահանջ դարձնել: Այդպիսիների թիվը հասնում է 700-ի:

Երեք տարի առաջ Պլզենում կազմակերպվեց Եվրոպայում առաջին մանկական պատկերասրահը: Այն ստեղծվեց Լիդիցեի միջազգային ցուցահանդեսների բազայի վրա: Մի օր նստած զրուցում էինք, և զրույցին ներկա էին մեր ընկերները Լիդիցե քաղաքից: Որոշեցինք ստեղծել մանկական նկարի ամենամյա միջազգային ցուցահանդես:



Առաջարկեցի այդ ցուցահանդեսը կազմակերպել Լիդիցե քաղաքում, որովհետև պատերազմի տարիներին այնտեղ շատ երեխաներ են զոհվել: Եվ թող այսօր աշխարհի երեխաները նկարեն իրենց երազանքները, մտքերը, թե ինչպես երեկ մորաքրոջ տուն հյուր էին գնացել, ինչպես են պատկերացնում իրենց ապագան, որովհետև, ես համոզված եմ, ամբողջ աշխարհի երեխաները եթե միավորվեն՝ շատ բան կկարողանան բացատրել մեծահասակներին: Երեխան չի կարող անկեղծ չլինել, նկարել այն, ինչ չի տեսել, չի զգացել: Իրենց նկարներում նրանք կպատմեն, թե ինչն է իրենց հուզում, հետաքրքրում, ինչով են նրանք ապրում այսօրվա բարդ աշխարհում:

Այժմ Լիդիցեի ամենամյա մրցույթ-ցուցահանդեսներին մասնակցում են 78 երկրների երեխաներ: Այդ ցուցահանդեսը գտնվում է Ժողովրդական ճակատի կենտրոնական կոմիտեի, Յունեսկոյի չեխոսլովակյան կազմակերպության, Չեխիայի և Սլովակիայի կուլտուրայի մինիստրությունների, ժողովրդական կրթության մինիստրության հովանավորության ներքո:

Սիրելի՛ հայ երեխաներ: Ավելի հաճա՛խ ուղարկեք ձեր նկարները Լիդիցե: Դա դժվար չէ: Դրա համար հարկավոր է նախ և առաջ նկարել նկարը՝ ցանկացած թեմայով, ցանկացած նյութով, և առանց ծալելու ուղարկել հետևյալ հասցեով. ՉՍՍՀ, Լիդիցե, Մանկական նկարների միջազգային մրցույթին:

*Գրի առավ՝ ԳԵՎՈՐԳ ՏԵՐ-ԳԱԲՐԻԵԼՅԱՆԸ*




Սիրե՜նք, սիրե՜նք տատիկներին,
Մեր հոգսերի լուռ ուղեկից,
Մեր ցավերի լուռ կարեկից,
Մեր խնդությամբ՝
Մեզանից շա՜տ ուրախացող,
Մեր արցունքը սիրով սրբող,
Տատիկներին՝
Արդեն կքած
Ժամանակի ծանր բեռից:
Տատիկներին, որ օրնիբուն
Օրհնում են մեզ բարի խոսքով,
Տատիկներին, որ հետևում,
Չե՜ն թողնում շատ տարվենք
խաղով,
Աշխատում են,
Որ դասերից մենք չուշանանք,
Որ «երկուսներ» մենք չստանանք,
Չմրսենք, չհիվանդանանք:
Ինչքան էլ շատ ու խոր սիրենք,
Էլի քիչ է տատիկներին,
Սիրե՜նք, սիրե՜նք տատիկներին:




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Նովիկ Վարդումյան

# ԱՄԱՌՎԱ ՏԱՔ ԳԻՇԵՐ ԷՐ...

Սար էինք գնում: Սայլի վրա դրված մեծ, անչափ մեծ տակառում, նոր հընձված խոտի վրա ես պառկած էի: Կողքիս հանդարտ շնչում էր Բողար շան ձագը: Մայրս նստած էր սայլի վրա: Սայլապան Արզոն ժամանակ առ ժամանակ խոսում էր եզների հետ:

— Քնի՛ր...— վերևից խոնարհվելով ասում էր մայրս:

Սակայն չէի կարողանում քնել: Լուսինն ընկել էր տակառի մեջ ու մեզ հետ գալիս էր: Բողար շան ձագը մեկնեց դունչը, հոտոտեց լուսինը, մռաց, ապա քիթը մտցնելով թևիս տակ, սկսեց համաչափ շնչել: Դաշտերում, բլուրներին լսվում էր ծղրիդների ճռճռոցը:

— Ի՜նչ գիշեր է...— հոգոց հանեց Արզոն ու էլի լռեց:

Սայլի անիվները հանգիստ գլորվում էին փափուկ, հարթ ճանապարհով, կարծես սահում էին:

Բլուրներից այն կողմ անտառն էր սկսվում: Օդում զգացվում էր ծառերի բուրմունքը, խառնվում բլուրներին տարածված, ծաղկած ավելի հոտին, և գլուխս պտտվում էր:

— Հո՜, հո՜..— Արզոն իջավ սայլից, քշեց ճանապարհից դուրս: Կանգ առանք:

— Իջնեմ Լղոցի այգիները, մի քիչ միրգ բերեմ:

Եզները փնչացնելով որոճում էին, մերթ-մերթ պոչերը շրմփոցով խփում մեջքներին: Մոտակա անտառից ճչում էին քնահարամ եղած թռչունները: Լու-



սիՆՆ ավելի մեծացավ։ Երկինքը լուսավոր էր։ Աստղերը միմյանց աչքով էին անում, ինչ-որ գաղտնիքներ փսփսում։ Բողար շան ձագը շարժվեց, հաչեց երազի մեջ, ապա երջանիկ կլանչոցով դունչն ավելի խորացրեց թևիս տակ։ Մայրս լուռ նստած էր։ Հոգոց հանեց, սկսեց ցածրաձայն երգել։ Ամեն ինչ հալվեց, ձուլվեց այդ երգի մեջ։ Ամառային տաք գիշերը լցվում էր տականի մեջ։

Հանկարծ սիրտս սկսեց ճմլվել, ներսումս մի անհասկանալի զգացմունք ծնվեց, բարձրացավ հասավ կոկորդիս։ Սկսեցի լաց լինել։ Արցունքներս թափվում էին, տաք, փափուկ, լուսնի լույսի մեջ։

— Ի՞նչ եղավ...— զարմացած վրաս խոնարհվեց մայրս։

Ես չէի կարողանում պատասխանել։ Ցնցվելով հեկեկում էի։

— Քեզ ի՞նչ եղավ, տղա՛,— չէր հասկանում մայրս։ Ապա ավելի կռացավ, բարձրացրեց, գրկեց։— Մի՛ լացի, ջա՛նս,— սեղմեց կրծքին, համբուրեց արցունքներից թրջված այտերս, աչքերս։

Ես ավելի ուժեղ սկսեցի լաց լինել։ Մայրս ոչինչ չէր կարողանում հասկանալ, սեղմում էր կրծքին, խնդրում, որ լաց չլինեմ։

Լացի պոռթկումն անցավ։ Կամացկամաց լռեցի։ Բայց դեռ լռությամբ թափվում էին արցունքներս, թրջում մորս ձեռքերը։

Ես պարզապես երջանիկ էի։ Երջանիկ էի, որ ամռան տաք գիշեր էր, որ անընդհատ լսվում էր ծղրիդների երգը, որ տականի մեջ էր ընկնում լուսինը, որ կողքիս նստած մայրս երգում էր, որ Արզոն իջել էր Լղոցի այգիները միրգ բերելու և Բողար շան ձագը, մռութը մտցնելով թևիս տակ, հաճույքից նվվում էր, որ ես կայի և ես մարդ էի։

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

## ՄԱՏԻՏՆԵՐԻ ՃԱՄՓՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ

Յոթ գույնի մատիտ
Ելան ճանապարհ,
Անցան ծովերով,
Անցան անապատ,
Հասան լեռներին,
Մտան դաշտ ու արտ,
Արտից վազելով
Հասան սարահարթ։

Հոգնած նստեցին,
Խոսեցին զվարթ,
Նորից վեր կացան,
Ելան ճանապարհ
Ու նորից անցան
Ծով ու անապատ։

Մատիտները յոթ
Աշխարհով անցան
Եվ իրենց անցած
Ճանապարհներին
Որպես հիշատակ
Գծեցին պայծառ,
Պայծառ ծիածան։

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ




Երկու խան են լինում, երկուսն էլ շատ հարուստ, և երկուսն էլ շատ պարծենում են իրենց ունեցածով:

Մի անգամ հեռու մի աուլից մի տղա է գալիս խաներից մեկի մոտ ու ասում.

— Եկել եմ, որ ինձ հովիվ վերցնես:

Խանին հովիվ պետք էր և նա ուրախությամբ նրան վերցնում է, տանում իր փարախը, իր հոտը ցույց տալիս ու ասում.

— Ահա իմ ամբողջ հարստությունը, հանձնում եմ քեզ ու վստահում, պահի՛ր:

Իսկ ինքը վերադառնում է տուն և հանգիստ ապրում է իր համար: Արոտավայր գնալու թարկը տալիս է: Երկրորդ խանը նրան նախանձելով ասում է.

— Ինչպես տեսնում եմ, հոգսից ազատ, ապրում ես քեզ համար:

— Հա՛,— պատասխանում է առաջին խանը, — հիմա ես հանգիստ եմ: Քանի որ իմ նոր հովիվը կա, ես հոգս չեմ ունենա: Այնքան լավ տղա է ձեռս ընկել: Նա կպահպանի հոտս, նա երբեք սուտ չի խոսի:

—Իսկ եթե ես նրան ստիպեմ սուտ խոսել, ինչ կասե՛ս,— հարցնում է երկրորդ խանը,— ի՞նչ կտաս ինձ:

— Եթե դու նրան ստիպես սուտ խոսել,— պատասխանում է երկրորդ խանը,— ես իմ ունեցած ամբողջ անասունը կտամ քեզ: Բայց եթե չկարողացար, դու քոնը կտաս ինձ:

— Համաձայն եմ,— ասում է երկրորդ խանը:

Վերադառնալով տուն, նա սայլակը լծել է տալիս, նստեցնում նրա մեջ իր սիրուն աղջկան և գնում են յայլաները:

— Աստված այս նախիրի մեկն երկուս անի,— ասում է խանը հովիվին բարևելով:

— Ողջ լինես, բարո՛վ եկար: Ես հիմա ձեզ համար սեղան կգցեմ,— ասում է հովիվն ու մի ոչխար բռնում, որ մորթի:

— Չէ՛,— ասում է հյուր խանը,— ոչխար չեմ ուտում:

— Որ այդպես է՝ մոզի կմորթեմ, — ասում է հովիվը:

— Չէ՛,— ասում է հյուր խանը,— մոզի էլ չեմ ուզում· և հյուր էլ չեմ մնա:

Հովիվը նայում է խանի սիրուն աղջկան և մտածում. «Ի՞նչ անեմ, որ սրանք մնան» և ասում է.

— Բա ի՞նչ կուտեք, թանկագին հյուր: Ինչ ուզում եք՝ էն էլ կպատրաստեմ:

— Չեկ մտրուկին եթե մորթես,— ասում է խանը,— ես ու աղջիկս կմնանք, կգիշերենք քեզ մոտ:

Իսկ այդ չեկ մտրուկը ձիերի երամակի

գլխավորներից լավագույնն էր: Խանը սիրում էր նրան, պարծենում նրանով... Բայց հյուրին պետք էր լավ ընդունել, այնպես անել, որ հյուրը գոհ մնա: Եվ հովիվը մորթում է շեկ մտրուկը:

Առավոտյան խանը աղջկա հետ վերադառնում է տուն: Հետո գնում է հարևան խանի մոտ և ասում.

— Դե հապա, խա՛ն, կանչի՛ր հովվիդ, հարցրո՛ւ, թե՝ անասունը սաղ-սալամաթ իր տեղո՞ւմ է, տեսնենք, թե ինչ պատասխան կտա նա քեզ:

Հովվի տերը մարդ է ուղարկում, հովվին կանչել տալիս: Տղան գալիս է միտք անելով. «Ի՞նչ պատասխան տամ խանին, երբ հարցնի, թե՝ անասունը սաղ-սալամաթ իր տե՞ղն է»: Մահակը տնկում է գետնի մեջ, իր փափախը գլխից հանում, դնում է նրա գլխին և սկսում խորհուրդ անել նրա հետ:

— Խանին կասեմ՝ մտրուկը քարափից ցած գլորվեց, սատկեց:

— Դա պատասխան չի,— ասում է մահակը,— մեզ մոտ քարափ չկա:

— Խանին կասեմ՝ մտրուկին գայլը խեղդել է:

— Դա պատասխան չի,— ասում է մահակը,— մտրուկն ինքն է մյուս ձիերին գայլից պաշտպանում, գայլը նրան չի խեղդի:

— Խանին կասեմ՝ մի անիծված խան իր սիրուն աղջկա հետ հյուր եկավ: Ես մտածելով, որ խանին հարկավոր է լավ պատիվ տալ, ուզեցի ոչխար մորթել, չուզեց, ուզեցի մոզի մորթել, չուզեց: Հարցրի՝ ի՞նչ է ուզածդ, ասաց՝ շեկ մտրուկը: Ստիպված բերի ու մըտրուկը մորթեցի: Իսկ մնացած անասունը սաղ-սալամաթ իր տեղն է:

— Ա՜յ դա պատասխան է,— ասում է մահակը,— հիմա գնա՛, մի՛ վախենա:

Տղան փափախը մահակի գլխից վերցնում նորից իր գլխին է դնում, մահակը ուսն առնում և գնում խանի մոտ: Գնում տեսնում է՝ խանի տանը նստած է հարևան այն խանը, որ հյուր էր եկել իրեն: Տերը հարցնում է հովվին.

— Ասա՛ տեսնեմ, իմ ազնի՞վ հովիվ, բա՛րձր ասա, որ լավ լսենք, անասունս սաղ-սալամաթ իր տե՞ղն է:

—Փա՛ռք ալլահին, խանն ապրա՜ծ կենա, անասունդ սաղ-սալամաթ իր տեղն է, շեկ մտրուկից բացի:

Տերը վեր է թռչում տեղից և գոռում.

— Ո՞նց թե, իմ շեկ մտրուկը չկա՞, ի՞նչ է պատահել իմ սիրելի շեկ մտրուկին:

Տղան պատասխանում է.

— Այսպես եղավ. հյուր եկավ ինձ մի անիծված խան՝ իր սիրուն աղջկա հետ: Մտածեցի, որ խանին հարկավոր է լավ պատիվ տալ: Ուզեցի ոչխար մորթեմ իր համար, ասաց՝չեմ ուզում, ուզեցի մոզի մորթեմ, ասաց՝ չեմ ուզում: Հարցրի, թե՝ բա ի՞նչ ես ուզում: Նա էլ թե՝ շեկ մտրուկը մորթի: Ըստիպված բերի ու մտրուկը մորթեցի: Մնացած անասունը սաղ-սալամաթ իր տեղն է:

Այսպես ասաց տղան: Ասաց ճշմարտությունը: Հարևան խանը պապանձվեց մնաց: Տան տերը հարցրեց նրան.

— Հը՞, հովվիս ասածը ճշմարի՞տ է, թե՞ ճշմարիտ չի: Կարողացա՞ր նրան ստիպել, որ սուտ խոսի:

— Չէ՛, չկարողացա: Ես տարվեցի, — պատասխանում է հարևան խանը:

Նա ստիպված է լինում իր ամբողջ կարողությունը՝ իր ողջ անասունը տալ մյուս խանին:

Այդ ժամանակներից է լեռնականների մեջ մնացել այս խոսքը. «Հովիվը խորհուրդ է անում իր մահակի հետ»:

*Վերապատմեց ՄԱՐԿ ՎԱՏԱԳԻՆԸ*
*Թարգմ. ԱՆ. ՍԱՀԻՆՅԱՆԻ*

# ԱՅԴՊԵՍ ԷԼ Է ԼԻՆՈՒՄ

*ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ*

Քննություններին իմ բախտը չի բերում. կամ տված օրերն են քիչ լինում պարապելու համար, կամ անգիր սովորելու շատ բան է լինում, իսկ իմ հիշողությունն էլ մի բանի պետք չէ: Վերջին քննությունն էր՝ բուսաբանությունից, ասում էին հեշտ առարկա է, և գուցե այնքան էլ դժվար չէր, եթե չլինեին այդ անիծյալ լատիներեն անունները, դեռ հայերենն ու ռուսերենն էլ չեմ ասում:

Փորձեցի մի քանիսն անգիր անել, մեկ էլ մտածում եմ, իսկ ի՞նչ իմանամ, որ հենց դրանք ինձ կընկնեն: Նայում եմ, ըհը՛, այս մեկը կարծես ծանոթ անուն է՝ ռոզա, վարդ, ուրեմն ընտանիքը վարդազգիներ, լատիներեն՝ posaceae, ռոզացե: Հորանջելուց քիչ էր մնում ծնոտս դուրս ընկներ, էլ չեմ իմացել, թե ինչպես եմ քնել: Առավոտյան մորս միջամտությամբ մի կերպ արթնացա, մի հարյուր անգամ «կկտրվեմ, չեմ կըտըրվի» ասելուց հետո, վերջապես հոգնած ու բթացած գլխով գնացի քննության:

Հարցաթերթիկին մի կերպ պատասխանեցի ու շունչս պահած սպասում եմ:

— Ո՞ր ընտանիքին է պատկանում խնձորենին,— հարցնում է պրոֆեսորը:

Լռում եմ:

— Իսկ տանձենի՞ն...

Էլի եմ լռում:

— Դե լավ, իսկ թթենի՞ն:

Այստեղ վերջնականապես հույսս կտրած քրթմնջացի.

— Մոռացել եմ:

— Այո՛, այո՛, մոռացե, մոռացե,— հոգնած գլխով արեց պրոֆեսորը և ինչ-որ բան գրելով ստուգման գրքույկում, մեկնեց ինձ: Զարմանքից համրացած դուրս թռա լսարանից:

— Ինչպե՞ս է կոչվում թթենու ընտանիքը լատիներեն,— դիմեցի դռան մոտ հավաքվածներին:

— Մոռացե՛, մոռացե՛,— կանչեցին բոլոր կողմերից:

— Այ թե բախտս բերե՜ց...





# ՋԵՐՄՈՐԵՆ ՓԱՅՓԱՅԻՐ ՔՈ ԵՐԱԶԱՆՔԸ

Երևանի կինոյի տան դահլիճը լեցուն էր հանդիսականներով: Այստեղ առաջին անգամ ցուցադրվելու էր Հովհաննես Թումանյանի հանրահայտ «Գիքորի» նոր էկրանավորումը: Դահլիճում էին նաև ֆիլմի հեղինակները, դերասանները: Նրանց մեջ էր Գիքորի դերակատար Ալբերտ Ղուլինյանը, որը հայրենի Դսեղ գյուղից Երևան էր եկել հատուկ այս հանդեսին ներկա լինելու: Ցուցադրվում է ֆիլմը: Ավարտից հետո, լուսավորվում է դահլիճը, աչքս ընկնում է Ալբերտին: Նա հուզված է ու լաց է լինում: Բոլորը իրեն են նայում: Ի՞նչ սեր ու գորով կա բոլորի հայացքում: Իրոք, դժվար էր այդ պահին չհուզվել: Ալբերտը, որ ամիսներ շարունակ աշխատել է Գիքորի կերպավորման վրա, այժմ հանդիպել է իր կերպավորած հերոսին և հուզմունքից արտասվում է: Քիչ առաջ էկրանից լաց լինող Գիքորը կարծես դահլիճ է իջել ու կրկին լաց է լինում: Սակայն ի՜նչ մեծ տարբերություն կա այս երկուսի միջև: Էկրանի Գիքորը օտար ու հալածված մի երեխա է, իսկ դահլիճում կանգնածը՝ բոլորի ուշադրության կենտրոնում է, շատերը մոտենում են նրան, շոյում են գլուխը: Դուրս եմ գալիս դահլիճից ու փողոցով անցնելիս՝ սովորականից ավելի ուշադիր եմ Գիքորի տարիքի տղաների հանդեպ: Վըստահ եմ, որ սրանցից ոչ մեկին բաժին չի հասնի Գիքորի ապրած դժվարությունները:

Քայլում եմ փողոցով հպարտությամբ լեցուն: Եվ Դսեղ գյուղում ապրող, սովորող Ալբերտ Ղուլինյանին, որ որոշել է դերասան դառնալ, մտովի ասում եմ՝ դու ջերմորեն փայփայիր մեծ դերասան դառնալու քո երազանքը, իմ և քո հայրենիքն էլ է ուզում, որ դու անպայման մեծ դերասան դառնաս և ապրես արժանավայել:

*ՏԻԳՐԱՆ ՄԱՆՍՈՒՐՅԱՆ*
*Հայաստանի պետական մրցանակի դափնեկիր, «Գիքոր» ֆիլմի երաժըշտության հեղինակ*

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# ԱՄՊԻԿՆ ՈՒ ԾԱՂԻԿԸ



Գետից ելավ մի ամպիկ՝
Թևին արծաթ զով ցողիկ:
Հեռու, հեռու՜ լեռներում
Բացվել էր մի նուրբ ծաղիկ:
Ժայռը ծածկել էր նրան,
Ջորը ծածկել էր նրան:
Ի՞նչ իմանար ամպիկը,
Որ ծարավ է ծաղիկը:

Քամին եկավ լեռներից,
Պատմեց ամպին այս մասին,
Ամպիկն հուզվեց ու ասաց.
—Քամի, տա՛ր ինձ քո ուսին,

Տա՛ր լեռները հեռավոր,
Ուր նուրբ ծաղիկն է բացվել,
Ժայռը ծածկել է նրան,
Ջորը ծածկել է նրան...

Ու գնացին երկուսով,
Ցողիկ տարան ծաղիկին,
Բայց արի տես՝ ծաղկի հետ
Ժայռն էլ, ձորն էլ ցողվեցին:
Բոլորն այնպես հագեցան,
Ասես ծարավ չեն եղել,
Բայց ոչ մեկը չիմացավ,
Ամպն ու՞մ համար էր եկել:

Նկ. ԱԴԵԼ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԻ

# ԱՇՆԱՆԱՅԻՆ



Աշունը մտել է քաղաք,
Դեղին է սփռել ամենուր,
Կանգնել են ծառերը գլխահակ,
Մերկանում են լռին ու տխուր:
Աշուն է, աշուն դալկահար,
Մայթերին տերևներ կան խամրած
Շուտ անցավ ամառը պայծառ,
Թախծում է աղբյուրը հոգնած:
Ու ես՝ գարուն եմ որոնում
Եվ տեսնում, որ իմ մեջ, սրտիս մեջ
Գարուն կա, գարուն կա ծաղկած:

ԼԱՈՒՐԱ ՍԱՐՋՅԱՆ
Լենինական, Ալ. Շիրվանզադեի անվ. դպրոց, 8-րդ դաս.

# «ՇՆՈՐՀԱԿԱԼ ԵՆՔ, ՀԱՅԱՍՏԱՆ»

«Հեռավոր իմ հայրենիք, լուսավոր իմ հայրենիք, ես քու զավակդ եմ հարազատ...» Ըսփյուռքի հայկական դպրոցների ու վարժարանների երեխաները արտասանում են այս որպես երդում: Սևաչ ու թխահեր այդ պատանիներն ու աղջիկները երազում էին տեսնել մայր հայրենիքը՝ Արարատն ու քառագագաթ Արագածը, կապուտաչ Սևանը, արևային քաղաք Երևանը: Եվ այս տարվա ամռանը նրանք այցելեցին Հայաստան: Հայրենիքի յուրաքանչյուր օրը հեքիաթ էր նրանց համար. Էջմիածին, Գառնի ու Գեղարդ, Հաղպատ ու Սևան... Անչափ ուրախ են Հարություն Դերմենջյանը, Կարո Կորգանյանը, Յոզեֆ Վանեսքեհյանը, Հրաչ Թյուրաբյանը, մյուսները: Նրանք բոլորն էլ Սիրիայի Դամասկոս քաղաքից են եկել «հայրենիքով ու հայերենով լցվելու»: Լազար-Նաջարյան վարժարանի սան Հովիկ Աթոքյանին ամեն ինչ էր հետաքըրքըրում. «Առաջին անգամ հայրենիք կայցելեմ: Ուրախության արցունքներով Երևանի օդակայան մտա և այդ վայրկյանից ինքզինքս հպարտ զգացի, թե հզոր հայրենիք մը ունիմ, ամենուրեք հայեր են... Մենք պանդուխտ երեխա-պատանիներ, միշտ մեր աչքերը սևեռած պիտի ըլլան դեպի հայրենիք»:

Սիրունատես, հայկական դիմագծերով կապուտաչ աղջիկ է Սևան Տերմենջյանը: Ամեն ինչ նա գրառում է իր փոքրիկ օրագրում: Երբ կարդում ես օրագրի էջերը, սիրտդ ուրախությամբ է լցվում: Նրա ծնողները, քույրերը և եղբայրները տարբեր առիթներով Հայաստան են եկել: Իսկ հեռու Հալեպում փոքրիկ Սևանի համար սկսվել է հայրենիքի լուսե հեքիաթը, որ պատմել են հայրիկն ու մայրիկը, Երևանում կրթություն ստացած մեծ քույրը՝ Զարմինը: Սևանը օրագրի էջերից մեկում գրել էր. «Շատ շնորհակալ եմ, հայրենիք, որ ինձի քո գիրկն առար: Առաջին անգամ գալով Հայաստան, հիացա քո ուրախ օրերով»:

Թամար Փիլավչյանն էլ հայրենիք էր եկել հեռու Կանադայի Տորոնտո քաղաքից: Արփի դպրոցի օրինակելի աշակերտուհին եկել էր տեսնելու իր պապուպապերի, իր նախնիների երկիրը:

— Շատ ուրախ եմ,— ասում է Թամարը,— որ եկա և տեսա հայրենիքը: Շատ անուշիկ է Հայաստանը: Եվ եթե առիթ ունենամ, կուզեմ նորեն գալ: Ինձի համար դժվար կլինի բաժանումը: Ես շատ սիրեցի Արարատ լեռին տեսքը: Արարատ լեռը առաջին տեղն էր, որ ես կուզեի տեսնալ...» Նույն երազանքն ուներ նաև քուվեյթահայ Ջեփյուռ Մինասյանը: «Ինչքան երջանիկ են այն երեխաները, ովքեր մայր հայրենիք կապրեն, հիանալի, սքանչելի հայաշխարհում: Ես չեմ հավատում իմ աչքերին. չեմ հավատում, որ հայրենիքիս մեջ եմ գտնվում: Ես և իմ ընկերները՝ շատ ենք ցավում, որ հեռու ենք մայր աշխարհից, մեր բարեկամներից, մեր հողից»:

Երազանքի ճանապարհով են եկել նաև Սիլվա Հակոբյանը՝ Լոնդոնից, Անի Ջիհանը՝ Դորտմունտից, Հրանտ Նահապետյանը՝ Մոնրեալից, Հովիկ Էմիրզյանը՝ Սիդնեյից, Հովիկ Չալյանը՝ Լոս Անժելոսից, Կարմեն Հովսեփյանը՝ Ստոկհոլմից և շատ-շատերը: Եկել են տեսնելու նոր ու նորոգ Հայաստանը, շենացող գյուղերն ու ավանները:

— Առաջին օրը,— պատմում է սիդնեյահայ Արմեն Կաքավյանը,— երբ Հայաստան հասանք, հպարտ զգացի: Ամենեն շատ սիրած եմ հնություններն ու բնությունը:

Բնավ չպիտի մոռանամ հուշարձանները, թանգարանները, վանքերը՝ մանավանդ Էջմիածինը, «Մայր Հայաստան» արձանը: Ամեն մի սփյուռքահայի առաջնային գործըն է Հայաստանը տեսնելը:

Երկրորդ անգամ է, որ ֆրանսահայ երեխաների խումբը Հայաստան է բերում Արշալույս Շամիկյանը: Նա ամուր թելերով կապված է մայր հայրենիքին:

— Մեր մանուկներուն համար ասիկա կյանքի ամենաարժեքավոր նըվերն է,— ասաց Արշալույսը, հետո ավելացրեց.— Անոնք այս մեկ ամսվա ընթացքին, անկասկած, հոգեփոխություն մը պիտի ունենան, իրենք զիրենք ավելի հայ պիտի զգան և անմոռանալի տպավորություններով և հիշատակներով պիտի վերադառնան՝ իրենց հերթին պատմելու սփյուռքի իրենց հասակակիցներուն այն ամենը, ինչ տեսան: Այս մեկ ամսվա ընթացքին է, որ ֆրանսահայ մանուկը պիտի ծանոթանա իր պատմության, մշակույթին և ավելի ամուր կապվի մայր հայրենիքի հետ:

Հայրենիքում ուրախ օրեր անցկացրեցին 144 սփյուռքահայ երեխաները: Նրանք իրենց հետ տարան իրենց հայտնագործած Հայաստանը:

*ԼԱՎՐԵՆՏԻ ՄԻՐԶՈՅԱՆ*



# Նահատակ սարի փեշերին

Նահատակ սարը սար չէ, գյուղի դիմացի բարձրավանդակն է, ծածկում է գյուղի տեսադաշտը, դրա համար ասում են՝ սար: Խոտն այստեղ ծընկահար է, տեղ-տեղ էլ կարող ես մեջը կորչել:

Սարալանջին աշխատում է Մանաշիտ (Մենաշեն) գյուղի միջնակարգ դպրոցի աշակերտական արտադրական բրիգադը:

— Արդեն հասցրել ենք այսքան հավաքել ու մի մեքենա էլ ուղարկել կալերը,— ասում է դըպրոցի դիրեկտոր Աղվան Գալստյանը,— աշխատողները 6—10-րդ դասարանի աշակերտներն են:

Խոտը ալիք-ալիք տապալվել է: Հարկավոր է շտապել, որովհետև ամռանը արևը բարկ է, իսկ սիլոսի կամ սենաժի խոտը չպետք է չորանա:

Արմենի ոտքերը թաց են, շաղոտ են: Ձեռքին թուղթ ու մատիտ կա: Արմեն Հովհաննիսյանը աշակերտական-ա ր տ ա դրական բրիգադի բրիգադավարն է:

— Է՜, ի՞նչ բրիգադավար,— ասում է Արմենը՝ մի քիչ շիկնելով,— ուղղակի գրում եմ օրվա կատարածը: Ես իմ ընկերների մոտ ի՞նչ բրիգադավար:

Իսկ ընկերները... տասներորդցիներ Ալեքսանդր Մնացականյանը, Ռիմա Հովհաննիսյանը, Արթուր Վարդանյանը, իններորդցիներ Վալերի Մնացականյանը, Կամո Հայրապետյանը, Նինա Առուստամյանը, ութերորդցիներ՝ Տանյա Գալըստյանը, Արարատ Ալեքսանյանը, յոթերորդցի Մանիկ Գալստյանը, բոլորը աշխատում են ամոթով չմնալ ավագների մոտ:

Դպրոցի ԼԿԵՄ կոմիտեն մայիսին հանդես եկավ «Կերի կուտակումը՝ հարվածային ճակատ» նախաձեռնությամբ: Եվ ահա խոտհնձի հենց առաջին օրվանից կազմակերպվեց խոտ հավաքողների այս բրիգադը:

Միջօրեն իր հետ բերեց մոշահավերի համերգը՝ մոշուտներից: Հեռավոր սարի ուսով մի ձիավոր էր սլանում: Ծամփո սարի գագաթից ամպերը իջնում էին դեպի ձորը:

— Շտապենք, անձրև է գալու,— ասաց Արմենը:

Շատ չանցած՝ բարձված մեքենաները սլացան դեպի գյուղ: Այդ «շատ չանցածը» գուցե մեկ ժամ էր, գուցե երկու կամ երեք ժամ, գուցե մի ամբողջ օր, որի ընթացքում բրիգադը կատարեց իր պարտականությունը:

Երեկոյան կոլտնտեսության վարչության նախագահ Ջավեն Գալըստյանը շնորհակալություն հայտնեց բրիգադի անդամներին և նոր առաջադրանք տվեց:

Վաղը նորից կթացանան նրանց ոտքերն ու փեշերը, արևածագը նրանը դարձյալ կդիմավորեն Նահատակ սարի լանջերին:

Իսկ աշնանը Ադրբեջանական ՍՍՀ Շահումյանի շրջանի Մենաշեն գյուղի միջնակարգ դըպրոցի աշակերտները ամառվա իրենց կատարած այս գործերի համար կոլտնտեսության միջոցներով կմեկնեն Երևան՝ էքսկուրսիա:

*ՀՈՎԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆ*






30-ական թվականներին՝ նախապատերազմյան տարիներին էր, առաջին անգամ ինձ իսկական գիտարշավի տարան: Խմբի մեջ ընդամենը երեք հոգի էինք՝ երկու տղա և ես: Աշխատում էինք Կովկասում՝ Սվանեթիայի լեռնաշղթայի բարձրավանդակում: Տղաները դիպլոմնիկներն էին նույն ինստիտուտի, ուր ես սովորում էի երկրորդ կուրսում: Մեր հարաբերությունները պարզ ու սովորական էին, թեպետև կատակով ես նրանց կոչում էի «իմ պետեր»: Մենք շատ ջահել էինք ու մեր անելիք գործը դրված էր բացառիկ անխոհեմ հիմքերի վրա: Սառցադաշտի հենց պռնկին երկու վրան էինք խփել, որն ամբողջ օրը թողնում էինք առանց հսկողության, իսկ իրերը հեռանալիս թաքցնում էինք քարերի մեջ: Տղաները ճանապարհ էին ընկնում լուսադեմին, իրենց հետ վերցնելով ալպինիստական որոշ հանդերձանք և, պատահում էր, վերադառնում էին մթնով: Ինձ մեն-մենակ ուղարկում էին համեմատաբար մոտիկ ու ավելի հասարակ ուղերթերի: Պետք է վերադառնայի մութը չընկած և բոլորիս համար ճաշ եփեի:

Առավոտները արթնանում էինք գրեթե միշտ պարզ-կապուտակ երկնքի տակ, իսկ ամպերը մեր ոտքերի տակ էին: Ճերմակ, թանձր շերտով փռվում էին նրանք, ասես ձյունապատ հարթավայր լինեն: Ինձ միշտ թվում էր, թե դրանց վրայով կարելի է հեշտությամբ մի գագաթից մյուս լեռնագագաթն անցնել: Օրվա ավելի ուշ պահին, երբ ես արդեն գործի մեջ էի, լեռների ետևից դանդաղ բարձրանում էր արևը և ամպեղեն հարթավայրը քըրքըրվում ու ասես մխում էր: Այս ու այնտեղ այդ հարթության վրա բարձրանում էին գոլորշու ճերմակ թափանցիկ կոհակներ և սառույցով պատած ողջ հարթությունը, իրեն շրջապատող գագաթների ամֆիթատրոնի հետ միասին, նմանվում էր ծխացող հսկայական կաթսայի: Հետո ամպերը հասնում էին իմ ետևից և մի կարճ միջոց ես թափառում էի մառախուղի մեջ, դժվարությամբ ջոկելով, թե ուր դնեմ ոտքս: Ամպերը բարձրանում էին ավելի վեր ու ցրիվ գալիս, և Սվանեթիայի լեռնաշղթայի բարձունքներում ամբողջ օրը իշխում էր ոչնչով չքողարկվող հարավային թեժ արևը:

Այն ժամանակ առանձնահատուկ կարգ կար. երկրաբանները քիչ էին, և դիպլոմնիկներին հաճախ ինքնուրույն աշխատանք էին հանձնարարում: Տղաներից մեկին՝ Անդրեյին դեռ Մոսկվայում խմբի ղեկավար էին նշանակել.

նա սպորտսմեն էր ու ալպինիստ, հիանալի ընկեր, որն ընկերոջը փորձանքի մեջ չի թողնի և կարող է փոխադարձ օգնության ոգի ներարկել ուրիշներին: Գեղեցիկ, բաց ու բարեհամբույր դեմքով, լավ կազմվածքով տղա էր: Իսկ երկրորդը՝ Կոստյան, ընդհակառակը, մի քիչ կորացած ու կարճատես, բայց շատ բարի, զիջող և միշտ ամենաբազմազան մտահղացումներով լի տղա էր: Ես կարող էի շատ երկար պատմել «իմ պետերի» մասին, եթե չվախենայի, որ դա ինձ շատ կհեռացներ պատմվածքիս թեմայից:

Ինձ արգելել էին մեն-մենակ քայլել սառցադաշտում և իմ ուղերթերն ընկած էին ալպիական մարգագետինների գոտում: Խոտն այնտեղ զարմանալի հյութեղ էր, իսկ ծաղիկները վառվռուն: Դրանք նման էին այգու ծաղիկների, բայց ինչ-որ բանով ավելի լավն էին, մի տեսակ ավելի բնական ու կենդանի: Ես այնտեղ գտնում էի սև վարդակակաչներ, բազմաթիվ վարդագույն երիցուկներ, ավելի խոշոր, քան սովորական մարգարտածաղիկները, շուռ եկած թերթիկներով ու սուր հոտով դեղին շուշաններ:

Հուլիս ամսին լեռնալանջի ստորոտում բացվեցին ալպյան վարդերը: Մեր վրանները խփել էինք հենց դրանց խիտ թփուտների մեջ և ուրիշ փայտ չունենալու պատճառով, վառում էինք դրանց բարակ, ոստոտ ճյուղերը: Երբ ալպյան վարդերը բացվեցին, այնքան գեղեցիկ էին, որ առաջ ծաղիկներին ամենևին ուշադրություն չդարձնող տղաներն անգամ նկատեցին և ամեն երեկո դրանց մասին էին խոսում: Ալպյան վարդերի տերևները մուգ են, հաստ ու խիտ, իսկ ծաղիկները՝ սպիտակ, նուրբ, ասես ճենապակե. դրանք այնքան շատ էին, որ լեռնալանջը տեղ-տեղ սպիտակին էր տալիս, ձյունով ծածկվածի պես:

Ուղերթերի ժամանակ ես հեռվից տեսնում էի սվանեթական ձիերին: Նրանք կիրճում թափառում էին առանց ձիապանների, իսկ շատ շոգ օրերին բարձրանում էին մինչև սառցադաշտի պռունկը: Մի տաս-տասներկու հատ էին: Երբ առաջին անգամ տեսա, ուզեցի մոտենալ, բայց նրանք ինձ մոտիկ չթողին: Իրականում դրանք արդեն կիսավայրի ձիեր էին, որովհետև ամռան սկզբից թափառում էին մարդկանցից հեռու, ազատության մեջ: Առաջին ամսի վերջին ես զննել էի բոլորին և ուսումնասիրել նրանց բարքերը: Դրանց մեջ մի երկամյա, քուռակի պես կարճ բաշով, հրաշեկ նժույգ կար. չգիտեմ ինչու ամենից շատ դրան էի ուզում բռնել: Ես փորձում էի հացով գրավել նրան, ուզում էի մոտենալ, երբ ջուր էր խմում առվից, բայց նա միշտ փախուստ էր տալիս, իր երկար գեղեցիկ ոտքերով թեթև վարգով կտրում թեք լեռնալանջը: Խորամանկության դիմեցի: Ուղերթերից մեկի ժամանակ ինձ հաջողվեց ձիերին գտնել ժայռոտ նեղ կիրճի մուտքի մոտ: Ես ջանում էի որքան հնարավոր է դեպի խորքը քշել նրանց, հետո մի երևացող տեղ թանձր աղ արած մեծ կտոր հաց դրի, իսկ ինքս թաքնվեցի դուրս ցցված ամենամոտիկ ժայռաբեկորի ետևում, բայց ձիերը հեռացան՝ ուշադրություն իսկ չդարձնելով հացին:

Ինձ երբեմն հաջողվում էր հեռվից զննել նժույգը: Դա լինում էր այն ժամանակ, երբ իմ ուղերթերն անցնում էին դաշտավայրի վրա կախված լեռնաշղթայով... Ես վերևից տեսնում էի, թե նա ինչպես է խաղում, մերթ մեծերից ետ մնալով, մերթ վարգով նրանց հասնելով ու հողմի պես երամակի մեջ

մխրճվելով, երբեմն էլ, իրիկնապահին, նա երկար կանգնում էր՝ գլուխը մի ուրիշ ձիու, ինչպես ես էի կարծում, մոր վզին դրած։

Եվ ամեն անգամ հրաշեկ նժույգին մոտենալու անհաջող փորձից հետո ես չէի կարողանում թոթափել այն միտքը, որ եթե ես չլինեի չափազանց քաղաքաբնակ, չափազանց «քաղաքակրթված», հնարը կգտնեի։

Եվ ահա պատահականությունը, վերջապես, բերեց մեզ դեմառդեմ։ Այդ օրը, ուղերթի հենց սկզբում ես ընկա մի շատ նեղ ու սիրուն կիրճ։ Նրա գագաթը հենվում էր սառցադաշտի ստորոտին, հատակով ու թեք կողերով հոսում էր հալած սառցաջուրը, որ բարալիկ առվակներով թափվում էր խոտի մեջ դուրս ցցված քարերին ու կիրճի հատակին հանդիպող արգելքներին առնելով քչքչում ու փոքրիկ վհիտ լըճակներ կազմում։ Ջրի աղմուկը շատ ուրախ էր, այնպես ինչպես մեր մերձմոսկովյան վայրերում է լինում ապրիլի սկզբին։ Քարից քար թռչելով, ես մի քիչ առաջ շարժվեցի առվի հոսանքն ի վեր, հետո ձախ լանջով բարձրացա փոքրիկ լեռնաշղթայի քարեղեն ուսը և այդպես քայլեցի դեպի սառցադաշտը։ Ու հենց այդտեղ էլ տեսա ձիերին։ Նրանք արածում էին ներքեվում, կիրճի հատակին, և առվի հոսանքով դանդաղ շարժվում դեպի վեր։ Ես հայացքով փնտրեցի իմ հրաշեկ նժույգին և տեսա, որ նա մի քիչ կտրըվել է ձիերի երամակից և լեռնալանջի գրեթե մեջտեղում, ժայռի փոքրիկ ելուստին կանգնած, խոտ է պոկոտում։ Այդ ելուստը բոլոր կողմերից կտրված էր և այնտեղ կարելի էր գնալ միայն վերևից։ Այդ ժամանակ մի խենթ բան անցավ մտքովս։

Ես մոտեցա այն տեղին, ուր հրաշեկ նժույգը գտնվում էր ուղիղ իմ ոտքերի տակ, և սկսեցի դանդաղ ներքև սահել, ջանալով հնարավորին չափ քիչ աղմուկ հանել։ Նժույգը անմիջապես չէ, որ ուշադրություն դարձրեց ինձ։ Նա կանգնել էր գլուխը կախ և սկզբում ես տեսնում էի միայն նրա գավակն ու ետևի ոտքերը։ Հետո լարվեց ու գլուխը թեքեց իմ կողմը։ Ես անշարժացա, հուսով, որ նա ինձ չի նկատի բարձր խոտերի մեջ, և նա շուտով հանգստացավ։ Առաջին անգամ էի նրան այդքան մոտիկից տեսնում։ Կարմիր պղնձի նման հրաշեկ էր, աբնը շողշողում էր ողորկ մետաքսանըման կողերին։ Մի քիչ էլ ներքև սողացի, և տարածությունը մեր մեջ կրճատվեց այնքան, որ վերև տանող ճանապարհը մտրուկի համար կտրված էր։ Այդ ժամանակ նա դեսուդեն ընկավ իր զբաղեցրած հարթակում, խրխնջաց, օգնություն հայցելով երամակից, հետո ամբողջ մարմնով դողաց և մութ, վախեցած աչքերը խեթեց իմ կողմը։ Ես ցած թռա վերջին ելուստից և հայտնըվեցի նրա հարթակում։

Հիմա ինքս էլ չեմ իմանում, թե հույսս ինչի վրա էի դրել։ Ուղղակի դա ձգձգվող մենամարտ էր, ուր հաղթանակ տանելու համար հարկավոր էր, որ ես ձեռքս հպեի իմ կիսավայրի հակառակորդին և արդեն մեկնել էի ձեռքըս, հոգուս խորքում տոնելով այդ հաղթանակը։ Բայց այդ պահին կատարվեց անսպասելին։ Նժույգը հանկարծ հուսահատական մի թռիչք գործեց օդի մեջ և հայտնվեց լեռնալանջի ներքևում՝ հազիվ նկատելի մի ելուստի վրա։ Իսկ ես, ձեռքս պարզած, մնացի կանգնած՝ շփոթ հայացքս հառած նըժույգին, որ կիրճի հատակին, պոչը քամուն տված ու վիզը ձգած, սուրում էր երամակի ետևից։

Նման հուսահատական ճիգից հետո ինձ ոչինչ չէր մնում, քան վերջնականապես պարտված ճանաչել ինձ:

Բացի այդ էլ, հանգամանքների բերումով, ես հաջորդ տասն օրվա ընթացքում այլևս ոչ մի անգամ չտեսա ձիերին, որովհետև ուղեկցում էի Անդրեյին հեռավոր ուղերթերի ժամանակ, փոխարինելով Կոստյային, որ գյուղ էր իջել մթերք բերելու:

Եվ այնուամենայնիվ, ինձ հաջողվեց շոյել հրաշեկ նժույգին, անսպասելի ու տարօրինակ հանգամանքներում: Դա պատահեց նույն այն գիշերը, որ հաջորդել էր Կոստյայի ճամբար վերադառնալուն: Երեկոյան մենք երկար նստեցինք խարույկի մոտ, լսում էինք Մեծ երկրի նորությունները և ուշ գնացինք քնելու: Տղաները շարունակեցին զրույցը՝ երկուսով մնալով իրենց վրանում, իսկ ես քնեցի նրանց ձայների անորոշ բվվոցի տակ: Գիշերն արթնացա անսովոր դղրդյունից: Վրանս մի ակնթարթ լուսավորվեց վառ սպիտակ լույսով, և ես հասկացա, որ մենք ամպրոպի բերանն ենք ընկել:

Կյանքումս առաջին անգամ էի երեք հազար մետր բարձրության վրա ամպրոպ տեսնում: Եվ դա իրոք որ սարսափելի էր: Ամպրոպաբեր ամպերը պատել էին մեր վրանները և կայծակը ճայթում էր հենց վրանների կողքին: Թափվում էր մոլեգնած անձրևը և դրանից գոյացած վտակները աղմուկով թավալգլոր էին անում քարերը: Գրեթե ամեն բոպե ճայթում էր խլացուցիչ որոտը, իսկ լեռնային արձագանքը կրկնում ու բազմապատկում էր դրանք, մինչև նոր խորտակող հարվածը: Ես լարված պառկել էի, վախենում էի շարժվել և սպասում էի: Սպասում էի կյանքի որևէ նշանի հարևան վրանից, ուր գիշերում էին «իմ պետերը»: Շատ կարևոր էր մարդկային ձայն լսել, բայց ինչքան էլ ականջս սրում էի, ոչինչ լսել չէր հաջողվում ու ես ան-

Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



հանգստացած մտածում էի. «Բա որ հանկարծ հարևան վրանին կայծակը խփած լինի: Ախր հենց այդ վրանում էին մետաղյա բոլոր գործիքներն ու սարքերը՝ մուրճեր, սառցատապարներ... Գուցե ձա՞յն տամ տղաներին: Իսկ եթե նրանց բան չի պատահե՞լ: Ախր նրանք կհասկանան, որ ես վախեցել եմ ու հետո ինձ վրա կծիծաղեն...»

Եվ հանկարծ ես մի նոր աղմուկ լըսեցի, բոլորովին ո՛չ նման մինչ այդ եղածին: Ականջիս էր հասնում անընդմեջ ու խուլ ինչ-որ թրխկոց: Այդ ձայնը արագորեն մոտենում էր, դառնում ավելի պարզորոշ և հանկարծ կտրվեց հենց վրանի մոտ: Զանգակների ձայն ու տագնապալի փնչոց էի լսում և ի զարմանս ինձ հասկացա, որ ձիերը իջել են լեռներից ու կանգնել վրանների մոտ: Ուրեմն այդ սոսկալի գիշերը նրանք մոլեգնած տարերքից փախել-եկել էին մարդկանց մոտ տարերքից պաշտպանությու՞ն գտնելու: Եվ ահա, որքան էլ տարօրինակ է, ամպրոպից ունեցած իմ վախը պակասեց, թեպետև տղաներն առաջվա նման կենդանության ոչ մի նշան ցույց չէին տալիս:

Եղավ այնպես, որ կարծես ինչ-որ խորհրդավոր կապ ստեղծվեց իմ և ձիերի միջև, կենդանի արարածների դաշինք՝ ընդդեմ կույր տարերքի:

Ես կամացուկ ձայն տվի ձիերին և ի պատասխան ցածրաձայն վրնջոց լըսեցի իմ քնապարկի գլխավերևում: Կայծակի բռնկման պահերին, վրանի բարակ քաթանի ետևում, ես տեսնում էի նրանց ընկճված աղոտ ստվերները: Հետո, վերջապես, ձիերին ձայն տվեց տղաներից մեկը, և նրանք նորից պատասխանեցին անհանգիստ վրնջյունով:

Կամաց-կամաց լուսանում էր, ամպրոպը գնալով թուլանում էր: Ես գլխի գցեցի բաճկոնս և վրանից դուրս նայեցի: Ներքևում, մեր ոտքերի տակ, լեռնալանջն ի վեր քուլա-քուլա տարածվում էր անթափանց մառախուղը: Տըղաների վրանը, որ անձրևից ուռել ու կախ էր ընկել, մերթ աղոտ երևում էր այդ քուլաների մեջ բացված ճեղքից, մերթ էլ կորչում թանձր ու խիտ ամպերում:

Տեսանելիության դաշտից դուրս, ինչ-որ տեղ, իսկական գետի նման աղմկում էր մինչ այդ օրը անմեղ հոսող մեր առվակը: Իսկ վրանի շուրջը կանգնել էին սվանեթական ձիերը: Գլխահակ, թրջված բաշերով, նրանք կանգնել էին կողք-կողքի խիտ երամակով: Նրանց մեջ էր իմ հրաշեկ նըժույգը, որ իսկույն աչքովս ընկավ, չընայած վաղ լուսաբաց էր ու մառախուղ: Եվ ահա ես մոտեցա ու շոյեցի նրա թաց մետաքսանման մեջքն ու քուռակի նման կարճ բաշը: Նա թեթևակի ետ ընկրկեց և նորից քարացավ նույն դիրքով, իսկ մառախուղի մի նոր ալիքով իմ աչքից կիսածածկ երամակը շարունակում էր անշարժ կանգնած մնալ, թեթևակի ցնցվելով ամպրոպի կամաց-կամաց թուլացող որոտից:

Ահա և բոլորը: Մի ամիս անց տղաները իջան ցած, ճնուղու մոտ աշխատելու, իսկ ես մեկնեցի Մոսկվա, որպեսզի չուշանամ պարապմունքներից: Այդ գիշերվանից հետո ես մի անգամ էլ տեսա ձիերին և նրանք դարձյալ մոտ չթողին ինձ: Ես ինքս էլ այլևս չէի ձգտում մոտենալ նրանց, հոգուս խորքում համոզված, որ հիմա արդեն նրանք ինձ իրենցն էին համարում: Երբ այս բոլորի մասին պատմեցի տղաներին, Կոստյան մտախոհ ասաց. «Երևի հենց այսպես է նախնադարյան մարդը ընտելացրել իր առաջին ձիուն»:

# ՏԵՍԵ՞Լ ԵՔ ԿԱՐՏՈՖԻԼԻ ԴԱՇՏ...

Ամպը ուռել, փքվել էր: Առաջ էլ նա այսպես խռովում էր, հավաքում շուրթերը և քամու փոքրիկ կատակից պայթում, լալիս՝ աշխարհի վրա անձրևահեղեղ տեղում, կարկտածեծ անում սարերը:

Գյուղը կարկտի ժամանակ կծկվում էր, կորանում, դառնում էր ամպի նման կլոր, բայց չէր խռովում: Ումի՞ց խռովեր, երբ դաշտերը կարկտածեծ են, խոտը հանդում անձրևից փտում է... Երեխաներն էլ հանկարծ փոքրանում էին, պայուսակները սեղմում թևի տակ՝ գնում դպրոց: Աշոտ անունով տղան մեծի պես ձեռքը խփում էր սեղանին ու ասում.

— Էն խոտը սարում փըչացավ...

Խոտը չփչացավ: Գյուղը ելավ, հավաքեց իր մեծ ու փոքրին ու գիշեր-ցերեկ հանդից տուն չեկավ: Աշոտ անունով տղան ասես մեծացավ, առավ իր ընկերներին ու գնաց դաշտ: Դաշտը միանգամից երփներանգվեց, խոտը լցվեց հյութով, իր մեջ պահեց ղաղձի, ուրցի, սարի հազար ու մի ծաղկի անուշ բույրը, ծփաց, սրսփաց, երբ առաջին լաս խոտը շուքով փռվեց ցողոտ արտում: Հետո աշխատանքի և հանգստի «Լոռի» ճամբարի անունը սկզբում անսովոր, ապա սովորական դարձած, գյուղում բերանից բերան անցավ: Ամեն տուն ուներ իր ճամբարականը, դաշտի ու արտի սրտացավ տերը, որն այսօր թե՛ գիրքը սեղմած թևի տակ դաս է սովորում, թե՛ փխրեցնում կարտոֆիլը, քաղհանում ճակնդեղը: Քիչ չեն, հարյուր հոգի, հարյուր աշխատող ձեռք:

... Տեսե՞լ եք կարտոֆիլի դաշտ: Մեծ, մուգ կանաչ, քամուց այնքան փափուկ է խշշում, ասես թավշյա տերևներն իրար չեն քսվում: Ու մեծ, ծփացող թավշի մեջ այս կողմ, այն կողմ ցրված ճամբարականներ: Ուզում ես ժամերով նայիր, նրանք գործ են անում, ժամանակ չունեն, իրիկունը կզրուցեն քեզ հետ: Նունեի օղակն է դաշտում: Քաղհան են անում: Դաշտը փշոտ է: Բայց նրանք էլ ուժեղ են, ու փուշն անզորությունից փոքրանում է:

— Դժվար է, հոգնեցիք, մի քիչ հանգստացեք,— ասում է սովխոզի բանվորական կոմիտեի նախագահ Գառնիկ Եղիկյանը,— սա ձեր ի՞նչ բանն է, գնայիք գիրք կարդայիք:

Տղաները նրան հանգըստացնում են. երբ դաշտից վերադառնան, դպրոցի գրադարան կմտնեն ու կըկարդան: Արմենի աշխույժ ձայնը տարածվում է դաշտում.

— Վոլեյբոլի միջօղակային մրցումներ են լինելու երեկոյան, թիմերը պատրաստեք:

— Ընկե՛ր Մամիկոնյան, անպայմա՛ն կգաք,— զգուշացնում են դպրոցի դիրեկտորին:

Անպայման կգա ընկեր Մամիկոնյանը, կմաքրի հողոտ ձեռքերը, քիչ հետո կիջնի սպորտհրապարակ ու մրցող թիմերը գոհունակ կժպտան, որ ընկեր Մամիկոնյանի նման ուսուցչուհի ունեն: Մրցումների թեժ պահին ճամբարի պետ Սիրուշ Ավագյանին կմոտենա ընկեր Եղիկյանը:

— Տեսե՞լ ես ոնց են քաղհանել դաշտը...— և ընկեր Եղիկյանը էլի կհիշի, որ անցյալ տարի այս նույն երեխաները 3600 տոննա սիլոս են կուտակել, քաղհանել են 25 հա կարտոֆիլ, 2,5 հա ճակընդեղ: Էլ չեմ ասում, որ ամպի խռոված օրերին ելել են սարերն ու հավաքել ղեղաբույսեր, գնացել են Ծովեր, մաքրել լճակի շրջակայքը, վերանորոգել նստարաններն ու կարգի բերել գրադարանի գրքերը:

... Դսեղին ինչպես էլ նայես, փռվում է քո առաջ իր մեծ արտ ու դաշտով: Տանիքներին չորացող չիրը, քաղցրացած ճակընդեղը, հողի մեջ դեռ տաք ու անուշ քնած կարտոֆիլը, արևի հյութերը կուտակել են իրենց մեջ, որ տան մարդկանց:

*ՌՈՒԶԱՆ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*




Սիբիրի առաջին «աքսորյալը» եղել է Ուգլիչ քաղաքի զանգը: Թագաժառանգ Դմիտրիին սպանելուց հետո այդ զանգի միջոցով ապըստամբության կոչ է արվել: Բորիս Գոդունովը դաժանորեն խեղդեց ապստամբությունը, իսկ զանգին ծեծեցին մըտրակներով, կտրեցին «լեզվակը» և աքսորեցին Տոբոլսկ: Միայն 300 տարի անց, 1891 թվականին հատուկ պատգամավորություն մեկնեց Տոբոլսկ և վճարելով մեծ գումար, զանգը ազատեց աքսորից և ետ բերեց Ուգլիչ:



Պետրոս Առաջինի օրոք արգելված էր խարույկ վառել ծառից 2 սաժենից մոտիկ: Զանցառուների ռունգերը կտրում էին, իսկ առանց թույլտվության ծառ կտրելու համար մեղավորներին ծեծում էին հաստ փայտերով:

1474 թվականին Բազելում տեղի ունեցավ մի տարօրինակ դատավարություն. ձու ածող աքլորը մեղադրվել էր կախարդության մեջ: Աքլորին և ձուն այրեցին խարույկի վրա:



Ամեն տարի Անգլիայում տեղի է ունենում ավտոմոբիլային մրցարշավ, որին կարող են մասնակցել 1904 թվականից ոչ ուշ թողարկված մեքենաները: Վերջին մրցարշավի զարդն էր 1894 թվականին թողարկված երեք ձիաուժանոց «Բրեմեր» մեքենան:




Հնդկաստանի նահանգներից մեկում մինչև այժմ էլ գոյություն ունի մի այսպիսի սովորություն. եթե աշակերտը ինչ-որ պատճառով բացակայում է դասերից, նրա փոխարեն դասերին պետք է ներկա գտնվի ծնողը:




Հին Չինաստանում մարդիկ իրար հանդիպելիս բարևելու փոխարեն հարցնում էին.

— Դու կերե՞լ ես:

Իսկ Պարսկաստանում ցանկանում էին.

— Ուրախ եղիր:



# Դուք եղե՞լ եք Թումանյանի թանգարանում

Եթե ո՛չ, անպայման գնացեք: Մեր մյուս դասական գրողների ու արվեստագետների թանգարաններն էլ գնացեք, լավ զննեցեք այն ամենը, ինչ ներկայացվում է ձեր ուշադրությանը: Եվ ոչ թե անպայման խմբով, այլ մեն-մենակ, որպեսզի կարողանաք առանց շտապելու շրջել սրահից սրահ և միտք անել ձեր տեսածների վրա:

Թումանյան փողոցի հյուսիսային ծայրին բարձրանում է նրա անունը կրող թանգարանի շենքը, որ կառուցվել է 1953-ին, ճարտարապետ Գր. Աղաբաբյանի նախագծով: Իր դռները բացելուց ի վեր թանգարանը շատ է հարստացել, իսկ ամենից ավելի՝ 1969-ին, բանաստեղծի ծննդյան 100-ամյակի ժամանակ, երբ կառուցվեց թանգարանի ցուցադրման նոր մասնաշենքը: Նույն ժամանակ ստեղծվեց «Լոռվա ձորը» դիորաման, որ առաջինն է դիմավորում այցելուին: «Անուշ» օպերայի անմահ մեղեդիների ուղեկցությամբ բացվում է վարագույրը, և դիտողի առաջ ներկայացվում է այն պատկերը, որ ամենքիս ծանոթ է բանաստեղծի նշանավոր տողերով.

*էն Լոռու ձորն է, ուր հանդիպակաց*
*Ժայռերը խորունկ նոթերը կիտած՝*
*Դեմ ու դեմ կանգնած, համառ ու անթարթ*
*Հայացքով իրար նայում են հանդարտ։*

Այնուհետև դուք անցնում եք ցուցա-

սրահների բաժիններով, որոնք մի առ մի ներկայացնում են Հովհաննես Թումանյանի կյանքի գլխավոր շրջափուլերը և թվում է ձեզ, թե դուք քայլում եք բանաստեղծի անցած ճանապարհով՝ սկզբից մինչև վերջ: Այդ ճանապարհին ձեզ ուղեկցում են լուսանկարներ, ձեռագրեր, փաստաթղթեր, որոնք ձեզ տանում են դեպի անցած-գնացած ժամանակները, երբ այդ բոլորը ոչ թե թանգարանային արժեքներ էին, այլ կյանքի արտահայտություններ: Այսպես, երևակայությամբ օժտված այցելուի համար մի որոշ ժամանակ անցյալը դառնում է ներկա, և նա նորից ու վերստին համոզվում է, թե կյանքի և ստեղծագործության ինչ մեծահարուստ, կյանքի հոգսերով և ստեղծագործության հրճվանքով լեցուն ճանապարհ է անցել Ամենայն Հայոց Բանաստեղծը: Այն էլ տեսնում եք, թե նրա որ նշանավոր գրվածքը որտեղ, կյանքի ինչ հանգամանքներում, ժամանակի ինչ ազդակների շնորհիվ է ծնունդ առել, ուրիշ խոսքով դուք ծանոթանում եք այդ գրվածքների, ինչպես գրականագիտության մեջ ասվում է, «ստեղծագործական պատմության» հետ: Իսկ դա շատ կարևոր է: Մի բան է իմանալ «Մի կաթիլ մեղրը» առակը, մեկ ուրիշ բան՝ իմանալ նաև, որ Թումանյանը գրել է Թիֆլիսի Մետեխի բանտում, ուր կալանավորված էր: Մի բան է ոգեշնչվել «Հայրենիքիս հետ» լայնաշունչ, հզոր բանաստեղծությամբ, մեկ ուրիշ բան՝ ոգեշնչվել՝ իմանալով, որ դա գրված է Մեծ եղեռնի դժնդակ թվականին, երբ Թումանյանը շրջում էր պատերազմի վայրերում, դառնալով համազգային աղետի ականատեսը և իր ժողովրդին լավատեսական ոգի ներշնչողը:

Այսպես գրական ամեն մի նշանավոր իրողություն թանգարանն ի ցույց է դրնում համապատասխան փաստերով ու փաստաթղթերով՝ այնքան տեսանելի և շոշափելի, որ իրողությունն այլևս չի մոռացվում: Ահա ինչու կարելի է ասել, որ մի-երկու ժամ թանգարանն ուշիուշով զննողը կարող է ստանալ ավելին, քան մի ամբողջ հետազոտություն կարդալով:

Թումանյանի թանգարանում շատ բան կա և հուզիչ, և ուսանելի, բայց ամենահուզիչն իր բնակարանն է, հատկապես՝ աշխատասենյակը:

Այն բնակարանը, որի մասին Վահան Տերյանը գրել է.

Թումանյանի պալատում
Ով որ քեֆի չի նստել,
Նա չի տեսել դեռ խնդում,
Աշխարհ չի տեսել:

Մի սրբազան սարսուռ է պատում այցելուին, երբ մտածում է, թե այս բնակարանում ինչ նշանավոր մարդիկ են եղել Թումանյանի զրուցակիցներն ու սեղանակիցները՝ Աղայան ու Կոմիտաս, Լեո և Շիրվանզադե, Իսահակյան և Փափազյան, Բրյուսով և Գորոդեցկի, Սիամանթո և Անդրանիկ զորավար և ուրիշ-ուրիշ պայծառ անուններ:

Սա այն բնակարանն է, ուր ապրել է բանաստեղծը կյանքի վերջին 14 տարում՝ վերստեղծված ճիշտ և ճիշտ այնպես, սենյակների այն քանակով և չափսերով, նույնիսկ պատերի նախշերով ու կահավորությամբ, ինչպես եղել է իր կենդանության օրոք Թիֆլիսի Վոզնեսենսկայա (Համբարձման) փողոցում: Առանձնապես դժվար է եղել Թումանյանի աշխատասենյակի վերականգնումը՝ իր բազմաթիվ ու բազմապիսի իրերով, տանտիրոջ անթերի ճաշակի կնիքը կրող շքեղ կահավորմամբ, նրա խառնվածքին հարազատ ներդաշնակությամբ, որ հիացրել է բանաստեղծի հյուրերին այնպես, ինչպես այսօր՝ իր թանգարանի հազարավոր այցելուներին:

Մնում է ասել նաև, որ թանգարանի դերը պահպանված արժեքների ցուցադրմամբ չի սպառվում: Դա, այսպես ասած, թանգարանի «տեսանելի գործունեությունն» է: Իսկ այցելուների համար անտեսանելին այն է, որ անում են թանգարանի գիտական աշխատակիցները Թումանյանի կյանքի և ստեղծագործության հանգամանքները ճշտելու, նոր նյութեր ի հայտ բերելու, եղած նյութերը կարգավորելու և լուսաբանելու համար:

Ինձ բախտ է վիճակվել շատ տուն-թանգարաններ տեսնել մեր երկրում և արտասահմանում: Եվ կարող եմ ասել, որ Թումանյանի թանգարանն իր հարստությամբ և ցուցադրման կուլտուրայով ազատորեն կարող է համեմատվել դրանցից ամենալավերի հետ: Դա, իրոք, մի առաջնակարգ հաստատություն է միջազգային չափանիշով և շատ բան կարող է տալ ուշադիր այցելուին:

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*



րերից մի օր կենդանիների արքան՝ առյուծը, կուշտ կերած, թիկն էր տվել որջի առաջ, արևի տակ: Մեկ էլ տեսավ աղվեսը ոտքերը հազիվ քարշ տալով գնում է:

— Է՜յ, քավո՛ր աղվես,— ձայն տըվեց,— մի բարև է՞լ չես ուզում տալ:

— Թագավորն ապրած կենա,— պատասխանեց աղվեսը,— ների՛ր, չնկատեցի, տեսողությունս թուլացել է:

— Ինչո՞ւ, հիվանդ հո չե՞ս:

— Չէ՛, հիվանդ չեմ, բայց երեք օր է՝ ոչինչ չեմ կերել, ուժս պակասել է, ոչ մի որս ձեռքս չի ընկնում:

— Ափսոս, ափսոս, քավոր աղվես: Էսօր մի վայրի ցուլ եմ կերել. գիտենայի՝ քո բաժինը կպահեի: Ոսկորներն էստեղ թափված են, վրան ահագին միս կա, կուզես՝ արի կե՛ր:

Աղվեսի բերանի ջուրը գնաց:

— Ի՞նչ ես ասում, թագավորն ապրած կենա, սովից ուշքս գնում է, եթե թույլ տաս՝ անպայման կուտեմ:

Աղվեսը վրա թռավ, սկսեց ագահությամբ կրծել ու լպստել ոսկորները: Առյուծը նայեց, նայեց ու խղճաց նրան:

— Քավո՛ր աղվես,— ասաց,— շատ ես հալից ընկել: Եթե կուզես՝ իմ տանը մնա, դարձիր իմ տնպահը, ես գնամ որսի ու իմ բերածից քեզ էլ բաժին հանեմ:

Աղվեսն ականջներին չհավատաց ու խնդրեց, որ առյուծը մեկ էլ կրկնի ասածը, և երբ առյուծը կրկնեց, ուրախությունից քիչ մնաց խելքը թռցնի:

— Արքայի՜ց արքա, իմ բարերա՞ր, իմ փրկի՞չ, էնպես պահեմ տունդ, որ ճանճն անգամ դռնից ներս չմտնի:

Պայմանավորվեցին, և աղվեսը դարձավ առյուծի տնպահը:

Հաջորդ առավոտյան առյուծը գնաց որսի ու դեռ կեսօրին շալակած բերեց մի խոյ:

— Դե՛, քավո՛ր աղվես, համեցիր ճաշենք,— ասաց ու խժռեց խոյի դմակը:

Աղվեսն ուզում էր վրա թռչել, բայց աչքն ընկավ առյուծի արյունակալած աչքերին, ետ-ետ քաշվեց:

— Մի՜ ամաչիր, քավո՛ր աղվես, մի՜ քաշվիր, մոտեցի՛ր,— առյուծը բացեց ոչխարի փորն ու ախորժակով կերավ սիրտն ու թոքերը, իսկ աղվեսը դարձյալ չէր համարձակվում մոտենալ:

— Է՜, ամաչկո՜տ ես, ամաչկո՜տ, քավո՛ր աղվես, էդքան ամաչկոտ չե՞ն լինի, համեցի՛ր անո՜ւշ արա:

Ասաց ու խոյի փորոտիքը հանեց, շպրտեց աղվեսի առաջ: Աղվեսը ագահությամբ լափեց ու լիզեց շրթունքները:

— Եթե չկշտացար, քավո՛ր աղվես, կրծի՛ր ոսկորները:

Առյուծը մեկնվեց հանգստանալու, իսկ աղվեսը ոսկորները կրծելով՝ մտածում էր, որ առյուծն անազնվություն արեց, ո՛չ դմակից իրեն բաժին հանեց, ո՛չ էլ մսից:

Ամեն օր, այդպես, կենդանիների արքան որս էր բերում ու մնացորդները տալիս աղվեսին: Եվ երբ աղվեսը լըցվեց, գիրացավ, ուժը տեղն եկավ, ընկըսեց գիշեր-ցերեկ մտածել, թե ին պե՞ս ցույց տա առյուծին, որ ինքն էլ ուժի տեր է:

Մի օր էլ առյուծը դարձյալ մի խոյ բերեց, սովորականի պես փորոտիքը տվեց աղվեսին, այս անգամ՝ սիրտն ու թոքն էլ հետը: Աղվեսը մեծ ախորժակով կերավ խոյի սիրտն ու թոքը, կշտացավ ու մի խորամանկ միտք հըղացավ:

— Արքայից արքա,— ասաց,— էսքան մտերիմներ ենք, համարյա հարազատի պես, բայց ես դեռ չգիտեմ, թե ինչ ուժի տեր ես դու:

Առյուծը քահ-քահ ծիծաղեց, բարձրացնելով թաթը՝ մի ուժգին հարված իջեցրեց աղվեսի գլխին: Աղվեսի աչքերից կայծեր թռան:

— Հիմա իմացա՞ր, թե ես ինչ ուժի տեր եմ, քավո՛ր աղվես:

— Ես այդքանը գիտեի, արքայի՛ց արքա,— մի կերպ ժպտալով՝ ասաց աղվեսը:— Ուզում եմ իմանալ՝ եթե երկու թաթերդ իրարից կապենք, կկարո-

ղանա՞ս ձիգ տալ ու կապերը կտրել:

— Ես էլ կարծում էի, քավո՛ր աղվես, թէ դու մեծ խելքի տեր ես,— պատասխանեց առյուծը,— բա իմ թաթի հարվածը քեզ չհամոզե՞ց, որ ես երկաթե շղթաներն էլ կկտրեմ,— և թաթը բարձրացրեց, որ մի հարված էլ իջեցնի աղվեսի գլխին, աղվեսը ճարպիկ ոստյունով խուսափեց հարվածից: Առյուծը մեղմացած ասաց.

— Դե լա՜վ. քավո՛ր աղվես, թաթերս կապի՛ր ու տես, որ դա ինձ համար դատարկ բան է:

Աղվեսը խոյի աղիքները մզեց, մի հատված կտրեց ու դրանով պինդ կապեց առյուծի թաթերը:

— Երկու ժամ մնա՛, մի քիչ չորանան, որ հեշտ կտրես,— ասաց աղվեսն ու մի քիչ հեռացավ:

Առյուծը կապած թաթերը մեկնեց դեպի արևը, և քունը տարավ: Գլուխն իջեցրեց ու քնեց: Աղվեսն էլ գնաց մի բարձունքի վրա՝ թփերի մեջ թաքնված սպասում էր հետևանքին: Անցավ ավելի քան երեք ժամ: Առյուծն արթնացավ, ուզեց ոտքի կանգնել, խիստ ցավ զգաց և նոր հիշեց, որ թաթերը կապված են: Թափով ձիգ տվեց, որ կապերը կտրի, չկտրվեցին: Առյուծը մռնչաց ու էլ ավելի ուժեղ ձիգ տվեց, աղիքներն ավելի խոր մխրճվեցին, հասան ոսկորներին: Առյուծն էնպես գոռաց, որ ժայռերը, ձորերն ու անտառը դղրդացին: Բոլոր գազանները դուրս փախան որջերից և միայն աղվեսը մնաց իր թաքստոցում: Հեռվից դիտում ու հրճվում էր, թե ինչպես է առյուծը ցավից գալարվում ու գոռում:

— Ա՜խ, թե ձեռս կընկնե՜ս...

Էդ ժամանակ մուկը, որ քարերի տակ թաքնված էր, լսելով առյուծի ցավատանջ մռնչոցը, դուրս եկավ և ասաց.

— Արքայի՜ց արքա, սիրտս մղկտում է, երբ քեզ տեսնում եմ այդ վիճակում, ուղղակի խղճում եմ...

Դեռ չէր ավարտել իր ծվծվոցը, առյուծը գոռաց.

— Չքվի՜ր աչքիցս, մկծե՛ռ, դո՞ւ էիր պակաս, որ առյուծին խղճաս:

Մուկը փախավ, մտավ քարերի տակ և այնտեղից դիտում էր, թե ինչպես է առյուծը տանջվում:

— Դու ինչպե՞ս կարող ես ինձ օգնել,— վերջապես ձայն տվեց, մկնիկին մոտիկ կանչեց առյուծը:

— Ես գիտեմ,— ասաց մուկը,— ես ամեն ինչ գիտեմ: Ինչ աղվեսը դարձել է քո տնպահը, ես սովի եմ մատնվել, առաջ ես էի ոսկորները կրծում, և շատ գոհ էի քեզնից:

— Իսկ դու ինչպե՞ս ես ինձ օգնելու, մուկ... Դե եթե ճար ունես, տես, ես քեզ մի խոյ եմ խոստանում:

— Ինձ խոյի ոսկորներն էլ են բավական,— ասաց մուկն ու մոտեցավ, մտավ առյուծի թաթերի արանքը և սկսեց կրծել աղիքի կապանքները: Մեկ էլ, ըհը, կապերը թուլացան, թաթերը ազատվեցին: Առյուծը երախտագիտությամբ նայեց մկանը, բայց էլ ավելի տխրեց. աղվեսն իրեն պատժի և մու՞կն ազատի: Կաղալով գնաց, խոստման համաձայն մի վայրի ոչխար որսաց, բերեց, մկանն ընծա, դրեց որջի առաջ ու ինքը գլխիկոր հեռացավ:

— Ո՞ւր ես գնում, արքայի՛ց արքա,— հարցրեց մուկը:

— Քո ի՞նչ գործն է, թե ուր եմ գնում:

Ասաց ու հեռացավ: Աղվեսը տեսավ հեռացող առյուծին և հարցրեց.

— Ո՞ւր ես գնում, արքայի՛ց արքա:

Առյուծը զայրացած նայեց աղվեսին ու պատասխան չտվեց: Աղվեսը համոզված էր, որ առյուծը կաղալով իրեն չի կարող հասնել, ուստի կրկնեց հարցը:

— Մի տեղ,— ասաց առյուծը,— որտեղ աղվեսը խաբում է առյուծին ու նեղը գցում, և նրան նեղ վիճակից փրկում է մուկը, էդ տեղում առյուծն էլ գործ չունի:

Ասաց ու առանց ետ նայելու, գլուխն առած գնաց մի այնպիսի տեղ, որ աղվեսի չհանդիպի: Եվ մինչև օրս գնում է...

*ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆ*

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ԶԱՆԳՈՒ, ԶԱՆԳՈՒ...

Երբ ուզում ես՝
Դուռն ես բացում
Քեզ սպասող կանաչ այգու:

Երբ ուզում ես՝
Կորչում ես դու
Ծառ ծաղկունքով լեցուն հանդում:

Երբ ուզում ես՝
Ցատկում ես դու
Լցնում քեզնով կիրճ ու անդունդ
Եվ անդունդից անհուսալի
Նետվում դեպի երկինքն անհուն,
Ուր աստղերն են պաղ թրթիռով
Մութի թանձր հենքը քանդում...

Զանգվի ձորում
Զինջ ու ծորուն,
Մի հին զանգ է ահազանգում.
— Զանգո՜ւ, Զանգո՜ւ...

# ՀԱՍԿ ՈՒ ՀԱՎՔ

Բլուր-բլուր գալիս շարվում,
Տեղ չի մնում էլ դաշտերին:
Բլուրներն են հիմա բուրում
Բոլոր բույրերը պաշտելի:
Փոքրիկ հավքեր կախվում օդից
Տեղ են բացում հասկի համար,
Որ երգի հետ հացը լինի
Եվ հացի հետ հավք լինի հար...

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ԿՈՄՊՈԶԻՏՈՐԻ ՄՈՄԸ

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԽԱՐԿՈՎ*

Յոզեֆ Հայդնը ծնվել է Վիեննայի մոտակա Ռոռաու բնակավայրում: Հայրը կառեթագործ էր, երաժշտության սիրահար և հաճախ երգում էր տավիղի նվագակցությամբ: Երգի նկատմամբ նրա սերը հաղորդվել էր փոքրիկ Յոզեֆին: Դեռ վաղ մանկությունից ուշադրություն էր գրավում տղայի հրաշալի լսողությունը, հիշողությունը, ռիթմի զգացողությունը: Իսկ մեղեդային հնչեղ ձայնը հնարավորություն տվեց ապագա կոմպոզիտորին որպես երգիչ ընդունվել գավառական եկեղեցական երգչախումբը: Շուտով Հայդնը տեղ է ստանում Վիեննայի սուրբ Ստեփանոսի մայր տաճարի երգչախմբում: Սկսվում է նրա երաժշտական ուսումնառությունը: Միայն համառությունն ու սովորելու հսկայական ցանկությունն են հնարավոր դարձնում դիմանալու փորձերի ու ելույթների դաժան համակարգին և ջութակ ու կլավիկորդ նվագելու ժամանակ գտնել: Դեռ այն ժամանակ Հայդընը փորձում էր երաժշտություն գրել, սակայն հաջողության չէր հասնում:

Երբ, անցման տարիքում, սկսվում է փոխվել նրա ձայնը, նրան տառացիորեն փողոց են նետում: Այլևս նա ոչ ոքի պետք չէր, բոլորը մոռանում են երգչին, որով այնքան հիանում էին: Դրանով էլ, խիստ ասած, ավարտվում է Յոզեֆ Հայդնի երաժշտական կրթությունը: Նա ձեռք է զարնում ամեն տեսակ գործի, միայն թե մի քիչ փող վաստակի, երաժշտության դասեր է տալիս, նոտաներ արտագրում, ջութակ նվագում հյուրանոցներում, երբեմն էլ ուղղակի փողոցների խաչմերուկներում:

Երբեմն հաջողվում է պատվեր ստանալ: Այսպես երևան են գալիս նրա առաջին մի քանի սիմֆոնիաները, կվարտետները, «Նոր կաղ սատանան» երաժշտական կատակերգությունը:

Ճակատագրի կամքով Հայդնը հանդիպում է իտալացի հայտնի մանկավարժ, կոմպոզիտոր և երգիչ Նիկոլո Պորպորային: Բայց դասերի համար մաեստրոյին վճարելու փող նա չուներ: Եվ Հայդնը դառնում է Պորպորայի նվագակցողն ու սպասավորը միաժամանակ, իսկ Պորպորան նրան կոմպոզիցիա է սովորեցնում:

1761 թվին հունգարացի իշխան Էստերգազին հրավիրում է Հայդնին ղեկավարելու իր կապելլան: Այսուհետև երիտասարդ կոմպոզիտորի կյանքն անցնում է Վիեննայից ոչ հեռու գտնվող Այզենշտադտ փոքրիկ քաղաքում և իշխանի ամառային դղյակում: Եվ այսպես շարունակվում է երեսուն տարի:

# ՅՈԶԵՖ ՀԱՅԴՆԻ ԾՆՆԴՅԱՆ 250-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Հայդնի վիճակը, որը պաշտոնապես կապելմայստեր էր նշանակված, քիչ բանով էր տարբերվում սպասավորի վիճակից: Էստերգազին սիրում էր, որ Հայդնը առավոտները ներկայանար հրամաններ ստանալու և սպասավորների հետ կանգներ նախասենյակում, երբեմն էլ պահանջում էր, որ մի գիշերվա ընթացքում նոր ստեղծագործություն գրեր: Այս բոլորը խորապես վիրավորում էր կոմպոզիտորին, սակայն կապերը խզել իշխանի հետ այդքան էլ հեշտ չէր:

Հայդնի վարպետությունն այդ ընթացքում կատարելության է հասնում, նրա երաժշտությունը հիացնում է բազմաթիվ ունկնդիրների, նրա ստեղծագործությունները հայտնի են դառնում շատ երկրներում: Նա շատ է գրում և գրում է ոգեշնչված...

Իշխան Էստերգազիի մահից հետո, արդեն վաթսունամյա Հայդնը վերջապես ստանում է ցանկացած ազատությունը: Նա մեկնում է Անգլիա համերգներ տալու: Հասարակությունը նրան հրճվալից է դիմավորում, յուրաքանչյուր երեկո հաղթանակի է վերածվում, դահլիճները լեփ-լեցուն են... Սա նրա երաժշտության համաժողովրդական ճանաչումն էր:

Այս ճանապարհորդության ժամանակ Հայդնը գրել է իր նշանավոր քսան «Լոնդոնյան սիմֆոնիաները», ինչպես նաև Հենդելի երաժշտությամբ ներշնչված «Աշխարհի ստեղծումն» ու «Տարվա եղանակները» օրատորիաները: Այս գործերը Հայդնի ստեղծագործության գագաթը հանդիսացան, իսկ կոմպոզիտորի ընդհանուր ժառանգությունն իսկապես հսկայական է:

Հայդնի ստեղծագործությունը համաշխարհային երաժշտական մշակույթի զարգացման գործում մի ամբողջ դարաշրջան է կազմում: Միայն նրա ստեղծագործություններում դասական դարձան սիմֆոնիայի, դաշնամուրի սոնատի, լարային կվարտետի ժանրերը: Կոմպոզիտորի լավագույն սիմֆոնիաները օրինակ դարձան այսօր այնքան սովորական դարձած մասերի որոշանի հետևողականությամբ՝ չորսմասանի ցիկլի համար: Սիմֆոնիկ նըվագախմբի կազմն էլ վերջնականապես հաստատվեց Հայդնի ժամանակ: Իր ստեղծագործություններում նա լայնորեն օգտագործում էր ժողովրդական մեղեդիներ, ժողովրդական երգերի մըշակումներ, հաճախ մեծ ֆորմաների սիմֆոնիկ ստեղծագործություններում պարային մեղեդիներ էր մտցնում, որը նրա երաժշտությանը հնչեղության թեթևություն ու թափանցիկություն էր հաղորդում: Կոմպոզիտորն ուժեղացնում է սիմֆոնիկ երաժշտության ներքին դրամատուրգիան: Սա հատկապես նկատելի է նրա Հրաժեշտի սիմֆոնիայում, որն առաջին անգամ կատարվել է «Էստերգազ» դղյակի ամառային սեզոնը փակող համերգում: Ավարտելով երաժշտական թեման, նվագողները, մարելով իրենց նոտակալների մոմերը, մեկը մյուսի ետևից թողնում էին բեմը: Սիմֆոնիան ավարտեցին երկու ջութակահար, որոնցից մեկը Հայդնն էր, և մարեցին վերջին մոմերը...

Յոզեֆ Հայդնի նոտակալի մոմը վաղուց է մարել, բայց մինչև օրս հնչում է ու կհնչի նրա երաժշտությունը, խռովելով ու հուզելով մարդկանց երևակայությունն ու ուրախություն պատճառելով նրանց:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 11 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար):

Գեղ. խմբագիր՝
Ն. ՄԱՆՈՒԿՅԱՆ

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 3.08.1982: Ստորագրված է տպագրության Թուղթը օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ 28.10.1982 թ.: ՎՖ 06274: տպագրություն, 3,9 պայմ., մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 63962: Պատ. 1849: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

